### ՅԻՇԱՏԱԿԻ ՀԱՆԴԷՍ ՎԻԷՆԻ ՄԷՋ

ՆՈՒԻՐՈՒԱԾ ԱԶԳ. ՀԵՐՈՍ

## ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

*Նախաձեռնութեամբ* Վիէնի Հ. Յ. Դ. ԱՆԻ կոմիտէի :

12 *Փետրուար, Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին*, Սէրֆլը Կաթոլիկ *սրահին մէջ*:

*Կը նախագահէ Ընկ. Ս. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ*

*Կը խօսի Ընկ. ՄԻՍԱՔ ՄԻՐՁԷ*

*Մասնակցութեամբ գաղութիս երեք յարանուանութեանց ներկայացուցիչներուն եւ զանազան միութեանց* :

*Օրուան պատշաճ գեղարուեստական խնամուած բաժին* :

Օր. Անժէլ Կարապետեան (*Լիոնի երաժշտանոցէն*), *մասնակցութեամբ* Պ. Սիրանոսեան (*Դաշնակ*), *գեղջկական պար, պիտի ներկայացուի* կենդանի պատկեր մը, *ղեկավարութեամբ* Օր. Լ. Ագպըյըգեանի :

*Մուտքը ազատ է* :

## ՆՈՒԷՐ

*Լիոնէն Տէր եւ Տիկին Մ. Կարապետեան քսան Ն. Ֆ. կը նուիրեն Հայ Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին, Այրի Տիկին Մ. Օպօղեանի մահուան առթիւ*: (*Ստանալ «Յառաջ»էն*) :

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

*Ընդհ. ժողովը պիտի գումարուի Փետրուար 9ին, Հինգշաբթի երեկոյ ժամը 21ին* : Ընտրութիւն նոր վարչութեան :

*Անդամներէն կը խնդրուի ներկայ ըլլալ*: *Ընդհ. ժողովը տեղի պիտի ունենայ Մշակոյթի Տան մէջ*, 17 Րիւ Պլէօ, մեթրօ Քատէ: *Սրահին ջերմութիւնը ապահովուած է* :

*Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ*

## ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

*Չորեքշաբթի, Փետրուար 8, երեկոյեան ժամը 9ին, Ազգ. Տան մէջ*, 32 *Րիւ տը Թրէվիզ, նախաձեռնութեամբ Փարիզի «Ահարոնեան» խումբին* :

*Կը խօսի՝*

*ՏԻԿ. ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ–ՊՈՒՏԱՔԵԱՆ*

*Նիւթ՝ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ*

*Կը հրաւիրուին Նոր Սերունդի ընկերները, ընկերուհիները եւ համակիրները*:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Դպրոցասէր Տիկնանց վարժարանի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները : Պ. Հայկ Քըրըքճեան (Վերոնօն) երկու հարիւր Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Միհրան Կարապետեան* 115, *Տոքթ. Տավուտեան հարիւր, Տիկին Էմմա Գարբիէլ* 50, *Տէր եւ Տիկին Տոքթ. Տամլամեան* 25, *Տէր եւ Տիկին Տոքթ. Ա. Պօղոսեան* 25, *Բարեսէր Տիկին մը երեսուն Ն. Ֆ.* :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Այրի Տիկին Եդուարդ Ճիզմէճեան, Օր. Մօնիք Ճիզմէճեան, Տէր եւ Տիկին Մկրտիչ Տէր – Ազարեան, Օր. Անրիէթ Ճիզմէճեան, Տէր եւ Տիկին Կարպիս Մալկաբալեան Պ. Պէնոար Կրանժէ եւ բոլոր ընտանեկան պարագաները իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, նամակով, հեռագրով եւ ծաղկեպսակով մասնակցեցան իրենց անհուն վշտին՝ Պ.* Եդուարդ Ճիզմէճեանի *ղառնակսկիծ մահուան առթիւ* :

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*Համախորբ. Միութեան Կարտանի մասնաճիւղը ցաւակցութիւն կը յայտնէ իր անդամներէն՝ Պ. Գ. Գալուստեանի, որ դժբախտութիւնն ունեցած է կորսնցնելու իր փեսան, ինքնաշարժի արկածի մը հետեւանքով* :

### ՄԵԾ ՎԱՃԱՌԱՏԱՆ ԲԱՑՈՒՄԻՆ

ԱՌԹԻՒ

### ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Տէր եւ Տիկին Նուպար կը հրաւիրեն իրենց բարեկամները քաժակ մը առնելու այս կիրակի (Փետր. 5) :

122, Rue Vaillant Couturier, Alfortville

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ խումբերն ու ենթակոմիտէները* :

*ԶԱՒԱՐԵԱՆ ենթակոմիտէ, այս Շաբաթ, ժամը ճիշդ 21ին* :

*ՀԱՅԱՍՏԱՆ ենթակոմիտէ, այս Շաբաթ, ժամը ճիշդ 21ին* :

*ՔՐԻՍՏԱՓՈՐ ենթակոմիտէ եւ ՇԱԽԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ խումբ, այս Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 3ին*:

*Սոյն ժողովներուն ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները* :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Տէր – Ստեփանեան ընտանիքը կը ծանուցանէ թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, իրենց մօր եւ իրենց հօրաքրոջ՝*

*ԱՆԱՀԻՏ ՏԷՐ – ՍՏԵՓԱՆԵԱՆԻ եւ*

*ՄԱՐԻ ԷՏԻՐՆԷԼԵԱՆԻ*

*մահուան քառասունքներուն առթիւ* :

*Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները* :



## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

**Surprise-Party aux Chandelles**

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պանեէօ–Քաշանի մասնաճիւղին կողմէ

Այս Կիրակի ժամը 16էն 23, Մշակոյթի Տան սրահը

17, Rue Bleue, PARIS (9e)

Գեղարուեստական բաժին, Հանելի մթնոլորտ

**Buffet**

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Անդրանիկ Օպոզեան եւ զաւակները Քոլէթ եւ Զմրուխտ (Լիոն – Վիլէօրպան), Տէր եւ Տիկին Սենեքերիմ Արսլանեան եւ զաւակները (Ամերիկա), Օպոզեան, Արսլանեան, Ծարծաթեան, Քըրպըրեքեան, Պապեան, Շիմշիրեան, Կարապետեան, Մարգարեան, Քիւփէլեան ընտանիքները (Ֆրանսա), Խոսրոֆ եւ Լութֆիք Տէր Յակոբեան, Իսկէնտէրեան, Աննայեան, Քիւփէլեան, Զուլալեան, Կոստիկեան, Անսուրեան, Քալէմքէրեան, Նաճարեան ընտանիքները (Ամերիկա), Անդրանիկ Օզկիւր, Պօղոս Պաքրճի, Պօ–յաճեան ընտանիքները (Մալաթիա), իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտ – նեն բոլոր անոնց, որոնք անձամբ, հեռա–գրով, նամակով, ծաղկեպսակով, նշ – ւէրներով զանազան միութիւններու եւ այցելութեամբ, մասնակցեցան իրենց խոր վշտին, իրենց մօր, մեծ մօր, քրոջ, մօ–րաքրոջ, հօրաքրոջ եւ ազգականին

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՄԱՐԻՑԱ ՕՊՈԶԵԱՆԻ
(Ծնեալ Արսլանեան, Մալաթիա)
մահուան առթիւ :

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

Ընդհ. Ժողովը պիտի գումարուի Փե – տրուար 9ին, Հինգշաբթի երեկոյ ժամը 21ին : Ընտրութիւն նոր վարչութեան :

Անդամներէն կը խնդրուի ներկայ ըլ – լալ : Ընդհ. ժողովը տեղի պիտի ունենայ Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ, մեթրօ Քատէ : Սրահին ջերմութիւնը ապահով – ուած է :

## ՆՈՒԷՐՆԵՐ

Տէր եւ Տիկին Անդրանիկ Օպոզեան եւ զաւակները Քոլէթ եւ Զմրուխտ, իրենց մօր եւ մեծ մօր ՄԱՐԻՑԱ ՕՊՈԶԵԱՆԻ (ծնեալ Արսլանեան) մահուան առթիւ կը նուիրեն Կապոյտ Խաչին, Կարմիր Խաչին, Աղքատախնամ Միութեան, Մալաթիոյ Կրթասիրաց Միութեան 150ական Ն. Ֆ. : (Ստանալ Լիոնի եկեղեցիէն) :

### ԾԱԽՈՒ Է ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Մեկնումի պատճառով ծախու է նպա – րավաճառի խանութ մը, ապրանքով կամ առանց ապրանքի, որ ունի խոհա – նոց մը եւ հինգ սենեակնոց յարկաբաժին մը վրան : Վարը՝ երկու մթերանոց եւ մէկ կառատուն : Գրել Յառաջին որ կը փոխանցէ կամ հեռաձայնել՝

49.51-58 A Décines (Isère).



Imprimerie Spéciale du journal « Haratch »

### ՑԻՇԱՏԱԿԻ ՀԱՆԴԷՍ ՎԻԷՆԻ ՄԷՋ
### ՆՈՒԻՐՈՒԱԾ ԱԶԳ. ՀԵՐՈՍ
## ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

Նախաձեռնութեամբ Վիէնի Հ. Յ. Դ. Անի կոմիտէի :

12 Փետրուար, Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Սէրֆլը Կաթոլիկ սրահին մէջ :

Կը նախագահէ Ընկ. Ս. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ
Կը խօսի Ընկ. ՄԻՍԱՔ ՄԻՐԶԷ

Մասնակցութեամբ գաղութիս երեք յա–րանուանութեանց ներկայացուցիչներուն եւ զանազան միութեանց :

Օրուան պատշաճ գեղարուեստական խնամուած բաժին :

Օր. Անժէլ Կարապետեան (Լիոնի երա–ժշտանոցէն), մասնակցութեամբ Պ. Սի–րանոսեան (Դաշնակ), գեղջկական պար, պիտի ներկայացուի Կենդանի պատկեր մը, ղեկավարութեամբ Օր. Լ. Ագպըյըգ–եանի :

Մուտքը ազատ է :

### ՎԱՐԴԱՆԱՆՑԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Փարիզի Հայ. Եկեղեցւոյ Հոգաբարձու–թիւնը նկատի ունենալով Վարդանանց մեծ եւ փառաւոր ճակատամարտի կրօնա–կան եւ ազգային տօնի պատմական հան – գամանքը, այս տարի եւս պատշաճ հան–դիսաւորութեամբ պիտի տօնակատարէ, 9 Փետրուար, Հինգշաբթի օր ժամը 9.45ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ :

Հրաւիրուած է Փարիզի եւ շրջակայքի գաւառներու աշակերտութիւնը : Պի–տի մատուցուի մասնաւոր Ս. պատարագ :

Արարողութիւններուն պիտի նախագա – հէ Հայրապետական Պատուիրակ՝

ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ

Յետ պատարագի դպրաց դասը պիտի երգէ յաւուր պատշաճի երգեր եւ պիտի ըլլան արտասանութիւններ :

Կը խնդրուի մեր բոլոր հայրենակիցնե–րէն որ ներկայ ըլլան, յարգելու համար Սրբոց Վարդանանց յիշատակը :

### ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ
### ՎԱՐԺԱՐԱՆ

Աշակերտներուն կողմէ կազմակեր – պուած թատերական ներկայացու – մը՝

**ԿԻՐԱԿԻ ՄԱՐՏ 5**

կէսօրէ ետք ժամը 3.30ին

### ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

Հովանաւորութեամբ Լիոնի Ազգ. Մի – ութեան, ղեկավարութեամբ Նուագամ Կրթ. Մարմնոյ, առաջնորդութեամբ ծա–նօթ վարիչ մանկապարտիզպանուհի Օր. Ընծայ Ստեփանեանի, Լիոնի Հայկազեան վարժարանի դպրոցական հանդէսը, տեղի կ'ունենայ Կիրակի, Փետրուար 19ին, Ռիւ Տիւնուարի 24 թիւ սրահին մէջ, կէսօրէ վերջ ժամը 3ին :

Կը հրաւիրուի անխտիր բոլոր հանրու – թիւնը :

### ԹԷՅԱՍԵՂԱՆ

Ֆ. Կապոյտ Խաչի Շրջ. վարչութեան կազմակերպած դասախօսութիւններու բացման առթիւ՝ հաւաքոյթ մը «Բաժակ մը թէյի» շուրջ : Այսօր Կիրակի ժամը 16ին, Մշակոյթի Տան մէջ :

Կը հրաւիրուին երիտասարդուհիները :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանի յաջորդ հաւաքոյթը այս Չո–րեքշաբթի ժամը 21ին՝ Քատէի վերնա – յարկը :

Դասախօսութեան նիւթն է «Ազգային քաղաքականութեան մը յատկանիշները» :

Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

## ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Չորեքշաբթի, Փետրուար 8, երեկոյ–եան ժամը 9ին, Ազգ. Տան մէջ, 32 Րիւ տը Թրէվիզ, նախաձեռնութեամբ Փարիզի «Ահարոնեան» խումբին :

Կը խօսի՝

ՏԻԿ. ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ–ՊՈՒՏԱՔԵԱՆ

Նիւթ՝ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Կը հրաւիրուին Նոր Սերունդի ընկեր–ները, ընկերուհիները եւ համակիրները :

ՎԱՐԴԱՆԱՆՑԻ 1500ԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ

Ի նպաստ Առնուվիլի եկեղեցիին

Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԿԱՌՎԱՐԵՆՑ ԽՈՒՄԲԸ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ

# ՎԱՐԴԱՆԱՆՑԸ

(5 արար – 4 պատկեր)

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ
ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ
եւ հովանաւորութեամբ
ԱՌՆՈՒՎԻԼԻ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆ

Կիրակի, Փետրուար 26, ժամը 15ին

**SALLE DE LA CHIMIE**

28 BIS, RUE ST. DOMINIQUE — MÉTRO : INVALIDES

Կը մասնակցի Սիփան – Կոմիտաս երգչախումբը ղեկավարութեամբ՝

ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ
## ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Փետրուար 12, Կիրակի ժամը 16 – 24

**LES AMBASSADEURS**

**3, Avenue Gabriel - Champs-Élysées**

Կը մասնակցին երկու հռչակաւոր նուագախումբեր

PIERRE DIEUZEY - JAZZ NEW ORLEANS
PEPITO GOMEZ - TYPIQUE TANGOS

Գեղարուեստական բաժին — Մուտք 5 Ն. Ֆ.

Կանխաւ ապահովել տոմսերը եւ սեղանները հեռաձայնելով Հայ Կարմիր Խաչի կեդրոնատեղին Էլիզէ 67 – 03

ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ.— Վարձուած սեղանները գրաւուած պէտք է ըլլան ամէնէն ուշը ժամը 19.30ին : Հակառակ պարագային պարահանդէսի կազմակերպիչ յանձ – նախումբը որեւէ պատասխանատուութիւն չի ստանձներ :

Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

## ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Չորեքշաբթի, Փետրուար 8, երեկոյեան ժամը 9ին, Ազգ. Տան մէջ, 32 Րիւ տը Թրէվիզ, նախաձեռնութեամբ Փարիզի «Ահարոնեան» խումբին :

Կը խօսի՝

ՏԻԿ. ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ-ՊՈՒՏԱՔԵԱՆ

Նիւթ՝ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Կը հրաւիրուին Նոր Սերունդի ընկերները, ընկերուհիները եւ համակիրները :

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

Ընդհ. ժողովը պիտի գումարուի Փետրուար 9ին, Հինգշաբթի երեկոյ ժամը 21ին : Ընտրութիւն նոր վարչութեան :

Անդամներէն կը խնդրուի ներկայ ըլլալ: Ընդհ. ժողովը տեղի պիտի ունենայ Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ, մեթրօ Քատէ: Սրահին ջերմութիւնը ապահովուած է :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանի յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի ժամը 21ին՝ Քատէի վերնայարկը :

Դասախօսութեան նիւթն է «Ազգային քաղաքականութեան մը յատկանիշները» :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Աղքատախնամի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.— Տէր եւ Տիկին Տիգ Կիւլպէնկեան երեսուն Ն. Ֆ. եւ Տէր եւ Տիկին Հրանդ Մինասեան քսան, փոխան ծաղկեպսակի ողբ. Տիկին Սաթենիկ Խաչատուրեանի մահուան առթիւ :

Տիկին Մարի Բուլատ իր մօրը մահուան առթիւ քսան Ն. Ֆ., Պ. Պ. Պաղտասարեան տասը, Բամպուքճեան տասը, Մէթրօ քսան, Պալեան քսան, Պ. Պ. Ստեփան եւ Ռաֆֆի Ստեփանեան իրենց հօրաքրոջ ողբ. Տիկին Էտիրնէլեանի մահուան առթիւ յիսուն, Գաբրիէլեան հինգ, Տէր եւ Տիկին Գամէր Գարամանեան ողբ. Եղ. Ճիզմէճեանի մահուան առթիւ քսան :

---

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ
ՎԱՐԺԱՐԱՆ

Աշակերտներուն կողմէ կազմակերպուած թատերական ներկայացում մը՝

**ԿԻՐԱԿԻ ՄԱՐՏ 5**

Կէսօրէ ետք ժամը 3·30ին

---

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանը կ'առաջնորդուի պետական ուսումնական ծրագրով :Եթէ ցարդ չէ կրցած բանալ Լիսէի բարձրագոյն կարգի դասարանները պատճառն այն է որ ցարդ չէ ունեցած բաւականաչափ ուսանողուհիներ այդ դասարաններուն համար :

Վարչութիւնը որոշած է ամէն ջանք ի գործ դնել ուղիղ ամբողջապէս իրագործելու լիսէի ծրագիրը իր վարժարանին մէջ, ուսուցչական համապատասխան կազմով :

Հետեւաբար կոչ կ'ընէ բոլոր այն ծնողներուն, որոնք կը փափաքին իրենց աղջիկները ղրկել լիսէի երկրորդ դասարանը (Սէքսիոն Մօտէռն) այժմէն իսկ դիմեն վարժարանի տնօրէնութեան արձանագրելու 1961 – 1962 տարեշրջանին համար :

### ՎԱՐԴԱՆԱՆՑԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Փարիզի Հայ. Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը նկատի ունենալով Վարդանանց մեծ եւ փառաւոր ճակատամարտի կրօնական եւ ազգային տօնի պատմական հանգամանքը, այս տարի եւս պատշաճ հանդիսաւորութեամբ պիտի տօնակատարէ, 9 Փետրուար, Հինգշաբթի օր ժամը 9·45ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ :

Հրաւիրուած է Փարիզի եւ շրջակայքի դասընթացքներու աշակերտութիւնը: Պիտի մատուցուի մասնաւոր Ս. պատարագ:

Արարողութիւններուն պիտի նախագահէ Հայրապետական Պատուիրակ՝

ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ

Յետ պատարագի դպրաց դասը պիտի երգէ յաւուր պատշաճի երգեր եւ պիտի ըլլան արտասանութիւններ :

Կը խնդրուի մեր բոլոր հայրենակիցներէն որ ներկայ ըլլան, յարգելու համար Սրբոց Վարդանանց յիշատակը :

ՅԻՇԱՏԱԿԻ ՀԱՆԴԷՍ ՎԻԷՆԻ ՄԷՋ
ՆՈՒԻՐՈՒԱԾ ԱԶԳ. ՀԵՐՈՍ

## ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

Նախաձեռնութեամբ Վիէնի Հ. Յ. Դ. Անի կոմիտէի :

12 Փետրուար, կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Սէրքլը Կաթոլիկ սրահին մէջ:

Կը նախագահէ Ընկ. Ս. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ

Կը խօսի Ընկ. ՄԻՍԱՔ ՄԻՐԶԷ

Մասնակցութեամբ գաղութիս երեք յարանուանութեանց ներկայացուցիչներուն եւ զանազան միութեանց :

Օրուան պատշաճ գեղարուեստական խնամուած բաժին :

Օր. Անժէլ Կարապետեան (Լիոնի երաժշտանոցէն), մասնակցութեամբ Պ. Սիրանոսեան (Դաշնակ), գեղջկական պար, պիտի ներկայացուի կենդանի պատկեր մը, ղեկավարութեամբ Օր. Լ. Ագպըյըգեանի :

Մուտքը ազատ է :

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ՝ ժամը 21ին: Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

ՕՐԱԿԱՐԳ.— 1) 1959 – 1960 տարեշրջանի բարոյական եւ նիւթական հաշուետուութիւն: 2) Ընտրութիւն :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՍԷՆ ԱՆԹՈՒԱՆԻ Համախմբ. Հայր. Միութեան մասնաճիւղի մեծ պարահանդէսը Մարտ 25ին, Շաբաթ գիշեր ժամը 9էն մինչեւ առաւօտ, Ալհամպրայի մէջ, մեծ նուագախումբ: Մանրամասնութիւնները յաջորդիւ :



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Նախաձեռնութեամբ Կապոյտ խաչի Փարիզի մասնաճիւղին
Կիրակի, Մարտ 5, ժամը 18էն 24

**Salons Lutetia**
**43, Bd. Raspail**

ՄԱՆՐԱՄԱՍՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՅԱՋՈՐԴՈՎ

## 30ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԵԱՆ ՇՐՋԱՆԻ

Կիրակի, Մարտ 5, կէս օրէ վերջ ժամը 2·30ին

**Salle de la Chimie**
**28 bis, Rue St-Dominique, Métro Invalides**

Մասնակցութեամբ Փարիզի շրջանի ֆրանսական եւ օտար սկաուտներուն, նախկին հայ արիներուն, եւ Փարիզի շրջանի սկաուտներու եւ գայլիկներուն :

Թատերական ներկայացումներ, հայկական պարեր եւ երգեր, սկաուտական ներկայացումներ, արտասանութիւն, եւ խաղեր, հայ Արիներու եւ գայլիկներուն կողմէ :

Պիւֆէ, ցուցադրութիւն — Մուտք 5 եւ 3 Ն. Ֆ.

---

ՏԱՐԻ ՆՈՐ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՓԱՌՔ ՆՈՐ

ՀՆԱԳՈՅՆ ՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԻ ԳՈՀԱՐ ՄԱՆՐԱՆԿԱՐՆԵՐՈՒՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՆՐԱՆԿԱՐՉՈՒԹԻՒՆ

— 1960 —

... « Մեծ ժողովուրդները իրենց մնայուն պատմութիւնը միայն սուրով, հուրով եւ արիւնով չեն գրեր, այլ եւ գրիչով, վրձինով եւ արուեստով՝ իրենց մշակոյթով: Անոնցմէ է հայ ժողովուրդը »:

ՀԱՅԱՍՏԱՆ ԼՈՒՍԱՆԿԱՐՈՒԱԾ՝ ՓԱՐԻԶ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԱԾ

Անթիւ եւ գունաւոր նկարներով

ՖՐԱՆՍԱԿԱՆ ՇՔԵՂ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՄԸ

Մեծադիր փառաւոր հատոր մը, 200 էջ, 100 արտատպում :

Գին 120 Ն. Ֆ.

ԴԻՄԵԼ

ՅԱՌԱՋ
32, Rue de Trévise, 32
PARIS (IX·)

---

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ

## ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Փետրուար 12, Կիրակի ժամը 16 – 24

**LES AMBASSADEURS**
**3, Avenue Gabriel - Champs-Élysées**

Կը մասնակցին երկու հռչակաւոր նուագախումբեր

PIERRE DIEUZEY - JAZZ NEW ORLEANS
PEPITO GOMEZ - TYPIQUE TANGOS

Գեղարուեստական բաժին — Մուտք 5 Ն. Ֆ.

Կանխաւ ապահովել տոմսերը եւ սեղանները հեռաձայնելով Հայ Կարմիր Խաչի կեդրոնատեղին Էլիզէ 67 – 03

ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ.— Վարձուած սեղանները գրաւուած պէտք է ըլլան ամէնէն ուշը ժամը 19·30ին : Հակառակ պարագային պարահանդէսի կազմակերպիչ յանձնախումբը որեւէ պատասխանատուութիւն չի ստանձներ :

## « ՅԱՌԱՋ » ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

*Տէր եւ Տիկին Տէրտէրեան (Փարիզ) մէկ տարեկան Յառաջ կը նուիրեն իրենց հօր՝ Պ. Տէրտէրեանի (Լիոն) :*

## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ի
ԱՊՍՏԱՄԲԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԻՆ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէին, մասնակցութեամբ Հ. Յ. Դ. ենթակոմիտէներու եւ խումբերու եւ Նոր Սերունդի խումբերուն :

*ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ*

**ԸՆԿ. ՏԻԳՐԱՆ ԹԱԴՈՅԵԱՆ**

*ԿԸ ԽՕՍԻ՝*

**ԸՆԿ. ՄԻՍԱՔ ՄԻՐՁԷ**

*Ուղերձ՝ Հ. Յ. Դ. Շաւարշ Միսաքեան խումբի եւ Նոր Սերունդի կողմէ :*

*ԱԼՀԱՄՊՐԱՅԻ ՄԷՋ*

340. BLD. CHAVE

Շաբաթ, Փետրուար 18, ժամը 21էն մինչեւ լոյս :

*Մանրամասնութիւնները յաջորդով :*

*Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ*

## ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

*Չորեքշաբթի, Փետրուար 8, երեկոյեան ժամը 9ին, Ազգ. Տան մէջ, 32 Րիւ տը Թրէվիզ, նախաձեռնութեամբ Փարիզի «Ահարոնեան» խումբին :*

*Կը խօսի՝*

*ՏԻԿ. ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ–ՊՈՒՏԱՔԵԱՆ*

*Նիւթ՝ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ*

*Կը հրաւիրուին Նոր Սերունդի ընկերները, ընկերուհիները եւ համակիրները :*

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

*Ընդհ. ժողովը պիտի գումարուի Փետրուար 9ին, Հինգշաբթի երեկոյ ժամը 21ին :* Ընտրութիւն նոր վարչութեան :

*Անդամներէն կը խնդրուի ներկայ ըլլալ: Ընդհ. ժողովը տեղի պիտի ունենայ Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ,* մեթրօ Քատէ: *Սրահին ջերմութիւնը ապահովուած է :*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*ԼԻՈՆ.— Տէր եւ Տիկին Անդրանիկ Օպոզեան, զաւակները եւ բոլոր ազգականները կը ծանուցանեն թէ Կիրակի, Փետրուար 19ին, առաւօտեան ժամը 10ին Լիոնի Հայոց եկեղեցիին մէջ (Րիւ Պուալօ) հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ողբացեալ մօր, մեծ մօր, եւ ազգականին*

*ՄԱՐԻՑԱ ՕՊՈԶԵԱՆԻ*

(Ծնեալ Արսլանեան)

*մահուան քառասունքին առթիւ :*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Կապոյտ Խաչի Կրընոպլի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է ի նպաստ իր դպրոցին, Ե. Հաճեանի մահուան տարելիցին տխուր առիթով, յիսուն Ն. Ֆ. Հաճեան ընտանիքէն եւ երեսուն Ն. Ֆ. Տէր եւ Տիկին Վարուժան Աւագեանէ :*

×

*Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլիէի օգափոխութեան կայանին կը նուիրեն.—*

*Տոքթ. Օտապաշեան (Շամպլի) 50 Ն. Ֆ., Պ. Պ. Տ. Սթամպուլեան (Կրընոպլը) երեսուն, Լ. Համբիկեան (Ժուան լէ Բէն) քսան, Երամեան (Վիլըմօմպլ) քսան, Տէր եւ Տիկին Սրմաքէշեան (Ալֆորվիլ) քսան, Ժաք Գազանճեան (Ալֆորվիլ) 15, Տօքթ. Մաքսատար (Շօլէ), Թիկին Տօքթ. Քէշեան (Մարսէյլ), Վ. Մոսկոֆեան (Լը Վէզինէ), Միշէլ Շալճեան (Լը Ման), Տէր եւ Տիկին Զ. Ալեքսանեան (Մարսէյլ), Վաղարշակ Մելիքեան, Տէր եւ Տիկին Սաաթճեան (Քոլոմպ), Մելիքեան, Խանճեան (Անկէն), Վահրամ Ոսկանեան (Վիլըմօմպլ), Ոստանիկ Աճէմեան (Անկէն), Որբերեան, Տէմիրճեան, Ինանեան, Էպպէրեան (Ալֆորվիլ), Վարժապետեան (Գուրպըվուա), Եօթնեղբայրեան (Փրէ Սէն Ժերվէ) տասնական Ն. Ֆ. :*

## Կ'ՈՒԶՈՒԻ

*Գրասենեակի սկսնակ օրիորդ մը, ընթեռնլի ձեռագրով: Դիմել անձամբ Յառաջի վարչութեան :*

*ՑԻՇԱՏԱԿԻ ՀԱՆԴԷՍ ՎԻԷՆԻ ՄԷՋ*

ՆՈՒԻՐՈՒԱԾ ԱԶԳ. ՀԵՐՈՍ

## ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

*Նախաձեռնութեամբ* Վիէնի Հ. Յ. Դ. Անի կոմիտէի :

12 *Փետրուար, Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին,* Սէրֆլը Կաթոլիկ *սրահին մէջ:*

*Կը նախագահէ Ընկ. Ս. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ*

*Կը խօսի Ընկ. ՄԻՍԱՔ ՄԻՐՁԷ*

*Մասնակցութեամբ գաղութիս երեք յարանուանութեանց ներկայացուցիչներուն եւ զանազան միութեանց :*

*Օրուան պատշաճ գեղարուեստական խնամուած բաժին :*

Օր. Անժէլ Կարապետեան (*Լիոնի երաժշտանոցէն*), *մասնակցութեամբ* Պ. Սիրանոսեան (*Դաշնակ*), *գեղջկական պար, պիտի ներկայացուի* Կենդանի պատկեր մը, *ղեկավարութեամբ* Օր. Լ. Ագպըյըգեանի :

*Մուտքը ազատ է :*

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

*Լսարանի յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի ժամը 21ին՝ Քատէի վերնայարկը :*

*Դասախօսութեան նիւթն է* «Ազգային քաղաքականութեան մը յատկանիշները» :



*ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻ*

8 bis, Rue des Ternes

*Այս Կիրակի առաւօտ ժամը 10.45ին Վարդանանցի արարողութիւն:*

*Կը խօսի ՎԵՐԱՊԱՏ. ՍԻՍԼԵԱՆ :*

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

*Այս Կիրակի, Փետրուար 12, Տօն Վարդանանց,* Հ. Սամուէլ վրդ. Արամեանի՝ *Ս. Խաչ եկեղեցւոյ ժողովրդապետական պաշտօնի տուչութեան արարողութիւն եւ հանդիսաւոր պատարագ, նախագահութեամբ ԳԵՐՊ. ԿԱՐԱՊԵՏ ԵՊԻՍԿ. ԱՄԱՏՈՒՆԻԻ :*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՄԱՅՐԵՐՈՒ ՓԱՌԱՏՕՆ

ՅՈՒՆԻՍ 13ԻՆ

×

*Պէլվիլ Լիլայի դպրոցի աշակերտութիւնը իրենց ուսուցչին ղեկավարութեամբ, պիտի ներկայացնէ* « Վարդանանցը» *Մարտ 19ին :*



Imprimerie Spéciale du journal « Haratch »

*ՎԱՐԴԱՆԱՆՑԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ*

*Փարիզի Հայ. Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը նկատի ունենալով Վարդանանց մեծ եւ փառաւոր ճակատամարտի կրօնական եւ ազգային տօնի պատմական հանգամանքը, այս տարի եւս պատշաճ հանդիսաւորութեամբ պիտի տօնակատարէ, 9 Փետրուար, Հինգշաբթի օր ժամը 9.45ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ :*

*Հրաւիրուած է Փարիզի եւ շրջակայքի դասընթացքներու աշակերտութիւնը: Պիտի մատուցուի մասնաւոր Ս. պատարագ:*

*Արարողութիւններուն պիտի նախագահէ Հայրապետական Պատուիրակ՝*

*ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ*

*Յետ պատարագի դպրաց դասը պիտի երգէ յատուկ պատշաճի երգեր եւ պիտի ըլլան արտասանութիւններ :*

*Կը խնդրուի մեր բոլոր հայրենակիցներէն որ ներկայ ըլլան, յարգելու համար Սրբոց Վարդանանց յիշատակը :*

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

*Մայր եկեղեցիի վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ ողբ. Վահան Քէստէքեանի յուղարկաւորութեան առիթով փոխան ծաղկեպսակի շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.— Պ. Պ. Արտաշէս Մենծիկեանէ տասը Ն. Ֆ., Բիւզանդ Գույումճեանէ տասը, Կարպիս Պէրպէրսարգիսեանէ (եկեղեցիի դասընթացքին, 10, Իսահակ Պօյաճեանէ 10, (քսան ալ Սողոմոն Թէհլիրեան սրահին): Աւանդ գումարը ստանալ եկեղեցիէն :*

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 21ին: Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:*

*ՕՐԱԿԱՐԳ.—* 1) 1959 – 1960 *տարեշրջանի բարոյական եւ նիւթական հաշուետուութիւն:* 2) *Ընտրութիւն :*

*ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արդութեան» խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Շարունակութիւն նախորդ ժողովին :*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*Ֆ. Կ. Պ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղը այս Շաբաթ օր, ժամը երեքին ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամուհիները Մշակոյթի Տան մէջ : Բոլորին ներկայութիւնը անհրաժեշտ է :*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Դպրոցասէրի տարեկան գեղարուեստական ցերեկոյթը՝ Մարտ 26ին :*

×

*ՍԷՆ ԱՆԹՈՒԱՆԻ Համախարբ. Հայր. Միութեան մասնաճիւղի մեծ պարահանդէսը Մարտ 25ին, Շաբաթ գիշեր ժամը 9էն մինչեւ առաւօտ, Ալհամպրայի մէջ, մեծ նուագախումբ: Մանրամասնութիւնները յաջորդով :*

*Տիգրան Նաւասարդեան, Այրի Տիկին Աննա Շաւէ, Պ. Պ. Մ. եւ Է. Շաւէ ցաւով կը ծանուցանեն իրենց հօր, փեսին եւ աներձագին՝*

**ՍՏԵՓԱՆ ՆԱՒԱՍԱՐԴԵԱՆԻ**

*մահը որ տեղի ունեցաւ Փետրուար 5ին, 66 տարեկանին :*

*Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր Հինգշաբթի, ժամը 14·15ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Պանթէօ — Փարիզիէնի գերեզմանատունը, ամփոփուելու համար ընտանեկան դամբարանը :*

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*ՓԱՐԻԶ. — Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ցաւակցութիւն կը յայտնէ Պ. Տիգրան Նաւասարդեանի իր հօր՝* Ստեփան Նաւասարդեանի *կսկծալի մահուան առթիւ :*

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

*Ընդհ. ժողովը պիտի գումարուի Փետրուար 9ին, Հինգշաբթի երեկոյ ժամը 21ին :* Ընտրութիւն նոր վարչութեան :

*Անդամներէն կը խնդրուի ներկայ ըլլալ: Ընդհ. ժողովը տեղի պիտի ունենայ Մշակոյթի Տան մէջ, 17* Րիւ Պլէօ, մեթրօ Քատէ: *Սրահին ջերմութիւնը ապահովուած է :*

### ՀԱՅ ՕԳՆՈՒԹԵԱՆ ՄԱՐՄՆԻ

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՀԱՆԴԷՍԸ

*Հինգշաբթի, Մարտ 2ին, Փավիյօն Տօֆին :*

### ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

*Շաւիլի եկեղեցւոյ հոգաբարձութիւնը ներկայիս կը ծանուցանէ թէ, այս Կիրակի պաշտամունք տեղի չունենար եկեղեցւոյն մէջ, տրամադրելի քահանայ չըլլալուն պատճառաւ :*

*Այս առթիւ կը խնդրուի հասարակութենէն ներողամիտ գտնուիլ, եթէ վերջին վեցամսեայ անկանոն կերպով տեղի ունեցան արարողութիւնները :*

*Յառաջիկայ Ս. Պատարագի թուականը պիտի տեղեկացուի մամուլի միջոցաւ :*

ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

## ՀԱՅԱՏԱՌ ԳՐԻ ՄԵՔԵՆԱՅ

*Իտալիա շինուած հայատառ գրի մեքենաներ ծախու են Սեւրի Սամուէլ Մուրատեան վարժարանին մէջ :*

*Փափաքողները կրնան դիմել վարժարանի մատակարարութեան :*

Imprimerie Spéciale du journal « Haratch »

### ՅԻՇԱՏԱԿԻ ՀԱՆԴԷՍ ՎԻԷՆԻ ՄԷՋ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԱԶԳ. ՀԵՐՈՍ

## ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

*Նախաձեռնութեամբ* Վիէնի Հ. Յ. Դ. Անի կոմիտէի :

12 *Փետրուար, Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին,* Սէրքլը Կաթոլիկ *սրահին մէջ:*

*Կը նախագահէ Ընկ. Ս. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ*

*Կը խօսի Ընկ. ՄԻՍԱՔ ՄԻՐԶԷ*

*Մասնակցութեամբ գաղութիս երեք յարանուանութեանց ներկայացուցիչներուն եւ զանազան միութեանց :*

*Օրուան պատշաճ գեղարուեստական խնամուած բաժին :*

Օր. Անժէլ Կարապետեան (*Լիոնի երաժշտանոցէն*), *մասնակցութեամբ* Պ. Սիբանոսեան (*Դաշնակ*), *գեղջկական պար, պիտի ներկայացուի* կենդանի պատկեր մը, *ղեկավարութեամբ* Օր. Լ. Ագպըլըգեանի :

*Մուտքը ազատ է :*

# ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ

## ՑԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած Դպրոցասէր Տիկնանց վարժարանի շրջանաւարտուհիներու եւ աշակերտուհիներու կողմէ

*Մարտ 26, Կիրակի, կէսօրէ վերջ ժամը 3ին,*

**Salle de la Chimie**

28, Rue Saint-Dominique

Métro Invalides

Պիտի ներկայացուի

## ՄԱՅՐԸ

(Եւգինէ Պօղոսեանէ)

եւ

Ֆրանսերէն կատակերգութիւն մը, Լապիշէն

ԵՐԳ, ՊԱՐ, ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ

6, 5, եւ 4 Ն. Ֆ.

### ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

*Այս Կիրակի առաւօտ ժամը* 10·45*ին Վարդանանցի արարողութիւն:*

*Կը խօսի ՎԵՐԱՊԱՏ. ՍԻՍԼԵԱՆ :*

## ԾԱԽՈՒ Է

*Վիրոֆլէի մէջ, Էնվալիտէն — Վէրսայլ շոգեկառքի գծին վրայ, Շաւիլ — Վէլիզի կայարանին ճիշդ դիմացը, յարկաբաժին մը՝ երեք սենեակ, խոհանոց, բաղնիք, կեդրոնական ջեռուցում, երրորդ յարկ, շատ լաւ վիճակի մէջ: Հեռաձայնել* 926 57 – 84, *ճաշի ժամերուն :*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*Ֆ. Կ. Պ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղը այս Շաբաթ օր, ժամը երեքին ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամուհիները Մշակոյթի Տան մէջ : Բոլորին ներկայութիւնը անհրաժեշտ է :*

### ՎԱՐԴԱՆԱՆՑԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

*Փարիզի Հայ. Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը նկատի ունենալով Վարդանանց մեծ եւ փառաւոր ճակատամարտի կրօնական եւ ազգային տօնի պատմական հանգամանքը, այս տարի եւս պատշաճ հանդիսաւորութեամբ պիտի տօնակատարէ, 9 Փետրուար, Հինգշաբթի օր ժամը 9·45ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ :*

*Հրաւիրուած է Փարիզի եւ շրջակայքի դասընթացքներու աշակերտութիւնը: Պիտի մատուցուի մասնաւոր Ս. պատարագ:*

*Արարողութիւններուն պիտի նախագահէ Հայրապետական Պատուիրակ՝*

*ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ*

*Յետ պատարագի դպրաց դասը պիտի երգէ յաւուր պատշաճի երգեր եւ պիտի ըլլան արտասանութիւններ :*

*Կը խնդրուի մեր բոլոր հայրենակիցներէն որ ներկայ ըլլան, յարգելու համար Սրբոց Վարդանանց յիշատակը :*

# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ԱԼՖՈՐՎԻԼ. — Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 21ին: Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:*

*ՕՐԱԿԱՐԳ. —* 1) 1959 – 1960 *տարեշրջանի բարոյական եւ նիւթական հաշուետուութիւն:* 2) *Ընտրութիւն :*

*ՇԱՒԻԼ. — Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Շարունակութիւն նախորդ ժողովին :*

### ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

*Այս Կիրակի, Փետրուար 12, Տօն Վարդանանց,* Հ. Սամուէլ վրդ. Արամեանի՝ *Ս. Խաչ եկեղեցւոյ ժողովրդապետական պաշտօնի տուչութեան արարողութիւն եւ հանդիսաւոր պատարագ, նախագահութեամբ ԳԵՐՊ. ԿԱՐԱՊԵՏ ԵՊԻՍԿ. ԱՄԱՏՈՒՆԻԻ :*

### ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ

## ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Փետրուար 12, Կիրակի ժամը 16 – 24

**LES AMBASSADEURS**

**3, Avenue Gabriel - Champs-Élysées**

*Կը մասնակցին երկու հռչակաւոր նուագախումբեր*

PIERRE DIEUZEY - JAZZ NEW ORLEANS

PEPITO GOMEZ - TYPIQUE TANGOS

Գեղարուեստական բաժին — Մուտք 5 Ն. Ֆ.

*Կանխաւ ապահովել տոմսերը եւ սեղանները հեռաձայնելով Հայ Կարմիր Խաչի կեդրոնատեղին Էլիզէ* 67 – 03

*ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ. — Վարձուած սեղաններ ը գրաւուած պէտք է ըլլան ամէնէն ուշը ժամը* 19·30*ին : Հակառակ պարագային պարահանդէսի կազմակերպիչ յանձնախումբը որեւէ պատասխանատուութիւն չի ստանձներ :*

ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀ. ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ

## ՏԱՐԵԿԱՆ ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, Փետրուար 19

**HOTEL GEORGE V**

Հովանաւորութեամբ

### ՉԱՐԵՀ ՊԷՅ ՆՈՒՊԱՐԻ

ժամը 17էն մինչեւ կէս գիշեր, Պարի երկու նուագախումբ, խնամուած պիւֆէ, սովորական գիներով

**Attractions - Cotillons - Tombola**

*Այժմէն ապահովեցէք ձեր տոմսերը եւ սեղանները դիմելով՝*

U.G.A.B. 11, Square Alboni, Paris (16e). Tél.TRO. 03-18, C.C.P.Paris 8019-72

Մուտքի տոմս, 7·50 Ն. Ֆ.

ՈՒՍԱՆՈՂՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ ՄՈՒՏՔ եւ ՍԵՂԱՆ ԿԷՍ ԳԻՆ.

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

*Վիլֆրանշէն Պ. Յովհ. Այանեան Տիկ. Մարիամ Այանեանի մահուան քառասունքին առթիւ տասը Ն. Ֆ.:*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Տէր եւ Տիկին Գասպարեան շնորհակալութիւն կը յայտնեն Հ. Բ. Ը. Միութեան Փարիզի վարչութեան, անդամներուն եւ անդամուհիներուն որոնք ոչ մէկ խնամք կամ աջակցութիւն խնայեցին իրենց տարաբախտ զաւկին՝*

*ՍՏԵՓԱՆ ՄԿՐՏԻՉԵԱՆԻ*

*հիւանդութեան եւ մահուան ժամանակ:*

*Ողբացեալ երիտասարդը որ 19 տարեկան էր եւ սանը Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԵԱՆ եւ կը յաճախէր Կիպրոսի Մելքոնեան վարժարան, մեռաւ Փետրուար մէկին, յետ երկարատեւ եւ անողոք հիւանդութեան, Վիլժիւիֆի հիւանդանոցը:*

*Շնորհակալութիւն նաեւ այն բոլոր բարեկամներուն, որոնք իրենց կարելին ըրին նիւթապէս եւ բարոյապէս:*

*Յուղարկաւորութիւնը եւ թաղումը կատարուեցան Փետրուար վեցին, Հ. Բ. Ը. Միութեան կողմէ, դագաղը ծածկուած էր ծաղկեպսակներով:*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ԿԱՊ. ԽԱՉԻ Պօմոնի մասնաճիւղի վարչութիւնը, Թէյասեղանի եւ ընդհ. խորհրդակցական ժողովի կը հրաւիրէ անխտիր իր բոլոր ընկերուհիները, այս Հինգշաբթի, կէսօրէ վերջ ժամը 15ին, Սահակ Մեսրոպ սրահին մէջ: Օրակարգ ունենալով Ցամսեայ գործունէութեան տեղեկատուութիւնը: Կը խնդրուի բոլոր ընկերուհիներէն անպայման ներկայ գտնուիլ:*

## Հ. Յ. Դ.
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

—o—

*ՄԱՐՍԷՅԼ. Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ընկ. ընդհ. ժողովի կը հրաւիրէ.—*

*ՄՈՒՐԱՏ խումբը այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին:*

*ՎԱՐԱՆԴԵԱՆ խումբը, այս Երկուշաբթի իրիկուն, ժամը 9ին:*

*Սոյն ժողովներուն ներկայ պիտի ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը:*

*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Րաֆֆի խումբի ընկերական ժողովը այս Հինգշաբթի, ժամը 21ին, Րէժանի սրճարանը: Պարտաւորիչ ներկայութիւն:*

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ
### ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

*Կը տօնուի մեծ պատրաստութեամբ Փետր. 19ին, Կիրակի ժամը 15.30ին, Րիւ ժէի սրահը:*

*Գեղարուեստական ճոխ ու խնամուած բաժին: Դպրոցի աշակերտութեան կը ներկայացուի:*

1.— ՅԻՍՈՒՍԻ ԾՆՈՒՆԴԸ՝ *կենդանի պատկեր, նոր երգերով:*

2.— ԾԱՂԻԿՆԵՐՈՒ ՄԵՆԱԽՕՍՈՒԹԻՒՆԸ՝ *երգախառն սիրուն պատկեր (մէկ արար):*

3.— ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՆ ԿՈՒԳԱՅ (*տրամախօսութիւն, մէկ արար*):

*Խմբերգ, երգ եւ արտասանութիւն:*

*Կաղանդ Պապայէն նուէր պիտի ստանան սրահին մէջ ներկայ եղող բոլոր սլգտիկները:*

*Սիրով կը հրաւիրուին, Վիզզօլի, Լանսէյի եւ Ռընաժի հայրենակիցները իրենց պզտիկներով:*

Imprimerie Spéciale du journal « Haratch »

ՅԱՌԱՋ
ՕՐԱԹԵՐԹ
Հիմնադիր՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

Le PREMIER QUOTIDIEN ARMENIEN en EUROPE
HARATCH
Directrice : ARPIK MISSAKIAN
Rédaction et Administration : 32, Rue de Trévise - PARIS-9e
Fondé en 1925 — Téléph. : PRO. 86 - 60
R. C. Seine 57 A 2731 — C. C. P. Paris 15069-82

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ
Ֆրանսա՝ Տար. 50 Ն. Ֆ. — Վեցամսեայ՝ 27 Ն. Ֆ.
Արտասահման՝ Տար. 60 Ն. Ֆ. — Հատը՝ 0.25 Ն. Ֆ.

ՈՒՐԲԱԹ 17 ՓԵՏՐՈՒԱՐ
VENDREDI 17 FEVRIER 1961

37ՐԴ ՏԱՐԻ — ԹԻՒ 9031 — 37EME ANNEE — Fondateur : SCHAVARCH MISSAKIAN — ՆՈՐ ՇՐՋԱՆ, 17ՐԴ ՏԱՐԻ, ԹԻՒ 4832

ՕՐՈՒԱՆ ԽՕՍՔԸ

## ԿԱՑՈՒԹԻՒՆԸ ԿԸ ԲԱՐԴԱՆԱՅ

Աշխարհի քաղաքական դիմագիծը խոր յեղաշրջում կրեց՝ երբ ափրիկեան գաղթավայրերու ժողովուրդները մէկը միւսի ետեւէն անկախութեան տիրացան :

Զօր. տը Կօլ իշխանութեան գլուխ գալէ վերջ իմաստութիւնն ունեցաւ նոր Սահմանադրութեամբ մը օժտելու Ֆրանսան, զայն ժողովրդական հանրաքուէով վաւերացնել տալէ վերջ :

Շնորհիւ Սահմանադրութեան բացորոշ տրամադրութեանց, Ափրիկէի ֆրանսական գաղթավայրերը անկախ պետականութիւն ստեղծեցին եւ որոշ կապերով կապուեցան մայր – երկրին հետ :

Ո՛չ մէկ լուրջ խլրտում ծագեցաւ ափրիկեան նորազատ երկիրներուն մէջ : Ֆրանսա փոխադարձ համաձայնութեանց միջոցաւ աջակցեցաւ նորակազմ պետութեանց, որոնց սահմաններուն մէջ կը տիրէ կատարեալ խաղաղութիւն :

Նոյնը չպատահեցաւ դժբախտաբար Քոնկոյի մէջ, երբ անցեալ Յուլիսի ըսկիզբը պելժ կառավարութիւնը անկախութիւն շնորհեց իր նախկին գաղթավայրին :

Այս ընդարձակ եւ հարուստ հողամասին 14 միլիոն սեւամորթ բնակիչները կը բաղկանան բազմաթիւ ցեղախումբերէ, որոնք զանազան գաւառաբարբառներ կը խօսին :

Ստուար մեծամասնութեամբ տգէտ ու աղքատ, Քոնկոցիները ցոյց տուին որ տակաւին պատրաստ չէին անկախութեան տիրանալու եւ իրենք զիրենք կառավարելու :

Պելժ կառավարութիւնը Քոնկօն պարպելէ առաջ ազատ ընտրութիւններով կեանքի կոչած էր խորհրդարան մը, որ Հանրապետութեան նախագահ էր նշանակած Քազավուպուն եւ վարչապետ՝ Փաթրիս Լումումպան :

Քոնկոյի քաղաքական վարիչները միատեսակ մտածում չունէին սակայն երկրին տրուելիք վարչաձեւին մասին :

Մինչ Լումումպա, Անթուան Կիզէնկա եւ ընկերները կողմնակից էին Քոնկօն վերածելու ամբողջական անկախ պետութեան մը, մայրաքաղաք ունենալով Լէոփոլտվիլը, Չոմպէ, Մուպութու եւ համախոհները կը ջատագովէին դաշնակցային հանրապետութիւն մը :

Ու խօսքէն գործի անցնելով, անոնք ըմբոստացան Լէոփոլտվիլի դէմ եւ ինքնավարութիւն հռչակեցին Քաթանկայի մէջ, որ Քոնկոյի ամէնէն հարուստ շրջանն է՝ ուրանիոմի թանկագին հանքերով : Ունի երկու միլիոն բնակիչ :

Կատարեալ խառնիճաղանճ ստեղծուեցաւ Քոնկոյի մէջ եօթը ամիսէ ի վեր եւ դեռ կը շարունակուի : Քաղաքային կռիւը օրէ օր աստիճան մը աւելի կը հրահրուի՝ շնորհիւ արտաքին ազդեցութեանց : Եղբայր եղբօր դէմ զինուած է :

Միացեալ Ազգերու Կազմակերպութիւնը զինեալ ուժեր ղրկեց՝ խաղաղութիւնը վերահաստատելու համար : Սակայն ապարդիւն :

Մոսկուա առիթէն օգտուեցաւ՝ պղտոր ջուրի մէջ ձուկ որսալու համար :

Լումումպա, որ երկար ատեն Պելժիոյ բարեկամ էր նկատուած, մէկ օրէն միւսը դարձաւ «ձախակողմեան» եւ դիմեց Խորհրդային Միութեան աջակցութեան, երբ նեղը մնաց :

Երկու հակամարտ ճակատներու մըրցակցութիւնը Եւրոպայէն ու Ասիայէն վերջ փոխադրուած է Ափրիկէ :

Լումումպայի եւ երկու ընկերներուն խորհրդաւոր պայմաններու մէջ սպանութիւնը ընդհանուր զայրոյթ առաջ բերած է քաղաքակիրթ աշխարհի մէջ :

Նման սպանութիւններ սովորական են պոլշեւիկեան բարքերուն համար, սակայն Կրեմլինն է այժմ որ ամէնէն աւելի բարձըր կը պոռայ՝ այպանելու համար գործուած ոճիրը :

Լումումպա ամիսներով իր վրայ խօսեցնել տալէ վերջ, այժմ դարձած է հերոսնահատակ, որուն անունը կը շահագործէ Մոսկուա՝ իր մանածը ներկելու համար :

Ո՞ւր պիտի յանգի ներկայ խառնակ կացութիւնը :

ՀՐԱՆՏ – ՍԱՄՈՒԷԼ

# ՕՐՈՒԱՆ ԴԷՊՔԵՐԸ

## ՎԻՐԱՒՈՐՆԵՐ ՄԱԿ-Ի ՄԷՋ

### ԳԱՀԻՐԷԻ ՊԵԼԺ ԴԵՍՊԱՆԱՏՈՒՆԸ ԱՅՐԵՑԱՒ

Լումումպայի սպանութենէն ետք, մթնոլորտը խաղաղած չէ եւ բողոքի ցոյցերը կը շարունակուին, ամէն կողմ, իսկ Ապահովութեան Խորհուրդի վերջին նիստին, բուռն փոխասացութիւններ տեղի ունեցան :

Ցոյցերուն ամէնէն կատաղին Գահիրէի մէջ տեղի ունեցած է եւ քաղաքական ու հակարեւմտեան բնոյթ ստացած : Քանի մը հազարի հասնող ամբոխը՝ յարձակեցաւ պելժ դեսպանատան վրայ եւ կրակի տուաւ, ինչպէս նաեւ ամերիկեան գրադարանը եւ կառքեր : Փարիզի եւ Լոնտոնի մէջ ալ սեւամորթ ուսանողներ եւ համայնավարներ ցոյցեր կատարեցին : Ձերբակալուեցան 200 հոգի :

Ապահովութեան Խորհուրդի վերջին նիստին ընթացքին խումբ մը Սեւամորթներ աղմկած եւ «ոճրագործներ» պոռացած են, երբ Մ. Նահանգներու պատուիրակը կը խօսէր. «Լումումպայի մահուան պատասխանատուն Ամերիկան է» կը շարունակէին պոռալ երբ ոստիկանութիւնը փորձեց դուրս հանել ժողովուրդը եւ միջադէպերու ընթացքին 21 հոգի (18ը ՄԱԿի պահակներ) վիրաւորուեցան : Այս աննախընթաց կռիւներէն ետք, Սթիվընսըն կրկին խօսք առաւ եւ ձաղկեց Մոսկուայի յայտարարութիւնը եւ դրած պահանջները, որոնցմէ մէկը՝ Համըրշոլտի պաշտօնէ հեռացումը «պատերազմի յայտարարութիւն է ՄԱԿի դէմ» :

Սթիվընսըն յայտնեց թէ միշտ զօրավիգ պիտի կանգնին Համըրշոլտի ծրագրին, բայց իրականին մէջ իր ճառը հիմնական ոչ մէկ բան բերաւ եւ աւելի հոգեշահ խօսքեր էին քան դրական առաջարկներ :

Խորհրդային պատուիրակը՝ Զորին անմիջապէս պատասխանած է, երկար ամբաստանագիր մը կարդալով նախ Համըրշոլտի դէմ, ապա քննադատելով արեւմտեանները : Այս առթիւ ներկայացուցած է խորհրդային առաջարկները զորս հրատարակեցինք երէկ :

Հակառակ Խորհրդային պահանջին Համըրշոլտ չէ հրաժարած եւ պաշտօնի գլուխ պիտի մնայ, նոյնիսկ եթէ իրեն չտրուի անհրաժեշտ օժանդակութիւնը : «Տեղի չեմ տար Խորհրդային Միութեան պահանջներուն» :

Հռոմ, Լոնտոն եւ Ուաշինկթըն որոշած են զօրավիգ կանգնիլ ՄԱԿի ընդհանուր քարտուղարին որ հինգ կէտերէ բաղկացած ծրագիր մը ներկայացուց՝ միջազգային քննութիւն Լումումպայի մահուան համար, քաղաքացիներու պաշտպանութիւն, բանակցութեան ամէն միջոցի օգտագործում բացի բռնի ուժէն, Քոնկոյի բանակի վերակազմութիւն եւ քաղաքական տարրին հեռացում :

Խորհրդային Միութենէն եւ Արաբ. Միացեալ Հանրապետութենէն ետք, Ղանա, Կինէ, Եուկոսլաւիա իրենց կարգին պաշտօնապէս ճանչցան Անթուան Կիզէնկայի կառավարութիւնը : Անկարելի չէ որ Ամերիկա ալ հետեւի այս երկիրներուն :

## ՊՈԼՍՈՅ ՀԱՅԵՐԸ ԵՒ ԻՐԵՆՑ ԻՐԱՒՈՒՆՔՆԵՐԸ

Արձագանգ տուած էինք մութ հրաւէրի մը, որ հրատարակուած էր Պոլսոյ հայերէն թերթերու մէջ՝ «ընտրութիւն կատարելու համար համայնքային հասարակաց հաստատութեանց վարիչ մարմիններու», ըստ պետական հրահանգի :

Պոլսոյ Հայերուն կը մնայ համակերպիլ միայն, — չեն կրնար խօսիլ :

Արտասահմանի Հայերուն համար միսիոն դարձած է զբաղիլ կաթողիկոսական եւ եկեղեցական գործերով, — կենսական հարց :

Եւրոպայի եւ Ամերիկայի քաղաքակրթութեա՛ն ախոյեաններուն համար պարկեշտութիւն է լուռ մնալ, որպէսզի Թուրքերը, պատռելով Հայոց Սահմանադրական իրաւունքները, որոնք հիմնուած են մարդու եւ անհատի իրաւունքներու սկզբունքին վրայ, վերջացնեն գործ մը, զոր սկսած էին նախորդները տարբեր ձեւով մը :

Ինչ որ է : Արձանագրելն ալ մխիթարութիւն մըն է :

Եւ ահա, ըստ պետական հրահանգի, Փետրուար եօթնին Թաղ. Խորհուրդներու ներկայացուցիչները նիստ մը գումարեցին Մատենադարանի սրահին մէջ :

Եւ այժմ միասին կարդանք ինչ որ կը գրեն Պոլսոյ թերթերը .—

Համայնքային հասարակաց հաստատութիւններու, Ս. Փ. Հիւանդանոցի, Ս. Խաչ Դպրեվանքի, ինչպէս նաեւ զոյգ Որբանոցներու եւ Լիսէներու խնամակալ մարմիններն ու հոգաբարձուները ընտրելու մասին կառավարութեան յանձնարարութեան եւ պաշտօնական հրահանգին իբրեւ հետեւանք կազմուած ընտրողական կեդր. Յանձնաժողովը անցեալ Չորեքշաբթի երեկոյ ժամը 18ին Պէյօղլուի Մատենադարանին մէջ նիստի հրաւիրած էր քաղաքիս բոլոր թաղային խորհուրդներու դիւանները, ընտրութեան եղանակին եւ անհրաժեշտ ցանկերու պատրաստութեան շուրջ խորհրդակցելու եւ նախապատրաստական աշխատութիւններուն ձեռնարկելու համար :

Որոշեալ ժամուն սրահ հաւաքուեր էին գրեթէ բոլոր թաղերու ներկայացուցիչները :

Սրահին մէջ սեղանի մը շուրջ դիրք գրաւած էին նախկին վարչութեան անդամները, գլխաւորութեամբ Պ. Կարապետ Աբրահամեանի, որ կը վարէր նիստը :

Իբրեւ ընտրողական յանձնաժողով՝ ներկայ էին նախկին վարչութեան անդամները Պ. Պ. Մաքսուտ Փափազեան, Յ. Տէրունի, Ն. Տիգրանեան, Կ. Թաթարեան եւ Ս. Ղազարոսեան :

Յանձնաժողովի անունով խօսեցաւ Պ. Կ. Աբրահամեան, որ յայտնեց թէ Սեպտեմբեր մէկին եւ Սեկտեմբեր 28ին երկու դիմումներ կատարուած էին պատկան իշխանութեան՝ մեր վարչական ընտրութիւնները կատարելու արտօնութիւն խնդրելու համար : Կառավարութիւնը կը հրահանգէ ժողովրդային քուէարկութեամբ կատարել Գալֆայեանի, Գարակէօզեանի, Ս. Խաչ Դպրեվանքի, Ս. Փ. Հիւանդանոցի, Էսայեան եւ Կեդրոնական լիսէներու խնամակալ մարմինները :

Նոյնպէս կառավարական տեսակէտը այն էր թէ թաղայիններու ընտրութիւններով գործի գլուխ գային նոյնպէս թաղային մարմինները այն թաղերուն, որոնք, եկեղեցի ունենալով հանդերձ, բնակչութեան թիւի սակաւութեան իբրեւ հետեւանք կը մատակարարուէին նշանակովի խնամակալութիւններով : (ԽՄԲ.— Գէշ խմբագրուած է այս պարբերութիւնը, որ գրեթէ անհասկնալի կը մնայ) :

Պ. Աբրահամեան յայտնեց թէ զանազան խոստումներ կատարուած էին իրենց՝ այդ մարմիններէն հակակշռող մարմնի մը ծնունդ տալու եւ համագործակցութիւնը ապահովելու համար : Եւ ժողովին կարդաց կուսակալութեան հետեւեալ պաշտօնագիրը :

Իսթիքլալ ճատտէսի Խտիվեալ Խանի հասցէով Հայ Համայնքի հասարակաց վարչական մարմնի անդամներու կողմէ, ներքին նախարարութեան յղուելու նպատակաւ կուսակալութեան յանձնուած 26–12–1960 թուակիր եւ դարձեալ կուսակալութեան տրուած 28 Դեկտ. 1960 թըւակիր խնդրագիրը քննուած է :

Նախարարութեան այդ հարցի առընչութեամբ վճռական հրամաններուն եւ 5404 թուակիր օրէնքի բացորոշ տրամադրութեան դիմաց, նկատելով որ կարելի չէր այդ խնդրագիրը նկատի ունենալ եւ նոր գործողութիւն կատարել, պէտք է անմիջապէս պատրաստութիւններու ձեռնարկել, նախապէս կատարուած զեկուցման համաձայն եւ առ առաւելն 15 օրուան ընթացքին աւարտելու համար ընտրութիւնները : Հակառակ պարագային անոնց մասին պիտի կիրարկուի պատժական 4055 թուակիր օրէնքի տրամադրութիւնը եւ համազօր 526րդ յօդուածի համաձայն հետապնդում պիտի կատարուի :

Կարեւորութեամբ կը խնդրեմ ,այս պարագան հաղորդել եւ արդիւնքը տեղեկացնել :

ՋՕՐ. ՐԵՖԻՔ ԹՈՒԼԱ
(Իսթանպուլի կուսակալ)

Այս պաշտօնագիրը կը կրէր 20 Յունուար թուականը եւ յիշեալ անձնաւորութիւններուն զեկուցուած է Փետրուար 5ին ստորագրութիւն առնելով :

Այս պաշտօնագրի ընթերցումէն ետք առաջարկուեցաւ կազմել Յանձնախումբ մը, որ զբաղի ընտրողական եռապատիկ ցանկերու պատրաստութեամբ :

Դիւանը նախ առաջարկեց Փետրուար 19ին, Կիրակի, կատարել միայն Գալֆայեանի, Գարակէօզեանի եւ Ղալաթիոյ ընտրութիւնները եւ տարբեր առիթի յետաձգել միւսները, ապա որոշուեցաւ միաժամանակ կատարել նաեւ Դպրեվանքի եւ Ս. Փ. Հիւանդանոցի ընտրութիւններն ալ, եւ որպէսզի կարելի ըլլայ պատրաստութիւններ տեսնել՝ պայմանաժամ խնդրել պատկան իշխանութենէն :

Ժողովը որոշեց նաեւ ընտրելիներու թիւը, Ղալաթիոյ, Գարակէօզեանին, Գալֆայեանին, Ս. Խաչ Դպրեվանքին համար՝ 9ական հոգի, իսկ 11 հոգի՝ Ս. Փ. Հիւանդանոցին համար : Այդ մարմիններու գործունէութեան շրջանը պիտի ըլլայ չորս տարի :

Որոշուեցաւ նաեւ կազմել 16 հոգինոց ընտրողական Յանձնախումբ մը, որ զբաղի եռապատիկ ցանկերու պատրաստութեամբ :

Առաջարկուեցաւ եւ ընդունուեցաւ այդ մարմնին իբրեւ բնական անդամ ընդունիլ, նախկին վարչութեան անդամներն ու Պ. Արամ Խտրեանը, որոնց հետ, ձեռամբարձ քուէարկութեամբ, Պ. Պ. Յակոբ Տէյիրմէնճեան, Կարապետ Ղազարեան, Կարպիս Սեմերճեան, Վահան Գարայեան, Թորոս Փեհլիվանեան, ԵդուարդՊէնլեան, Վարդ Շիկահեր եւ Թաթուլ Ալիքսանեան :

Կազմուեցաւ նաեւ խմբագրական մարմին մը, որուն կ՚անդամակցին Պ. Պ. Թորոս Փեհլիվանեան, Կարպիս Ղազարեան եւ Մինաս Տիարպէքիրլեան :

Ընտրական յանձնաժողովը Փետրուար 11ին, Շաբաթ օր, պիտի գումարէ իր նիստը, զբաղելու համար ընտրական գործերով, միշտ համաձայն պաշտօնական հրահանգին :

## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ի
ԱՊՍՏԱՄԲԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԻՆ
40ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Կը տօնուի Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան շքեղ սրահին մէջ, ընկերահամակրական խնջոյքով :

*Շաբաթ*, (25 *Փետր*.) *կէսօրէ վերջ ժամը* 17 – 23 :

*ԿԸ ԽՕՍԻ՝*

### ԸՆԿ. ԱՇՈՏ ԽԱՉԱՏՐԵԱՆ

*Գեղարուեստական խնամուած բաժին : Առատ պիւֆէ դիւրամատչելի գիներով : Մուտքը ազատ է :*

17, Rue Bleue, PARIS (9e)
Մէթրօ Քատէ :

×

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ
Փետրուար 25ին :

## ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*Կապ. Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ ընկերուհի Մարիամ Մութաֆեանի եւ ընտանեկան պարագաներուն, ողբացեալ Սարգիս Մութաֆեանի մահուան առթիւ, եւ փոխան ծաղկեպսակի երեսուն Ն. Ֆ. կը նուիրէ տեղւոյն չքաւորներուն :*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Պ. Պետրոս Պալթայեան կը փնտռէ իր եղբայրը՝ Գէորգ Պալթայեան (ընիկ Մարմաճիկցի), դեղագործ (եղած է Պոլիս եւ Եգիպտոս) : Եգիպտոսէն Ֆրանսա անցած է, տեղեկացնել՝ Պետրոս Պալթայեանի,*

189, BD. DE LA MADELEINE, NICE

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

*Նիւէն Պ. Նորայր եւ Օր. Պէաթրիս Սահաթճեանէ հարիւր Ն. Ֆ. : (Իրենց քրոջ Արուսեակի մահուան Բ. տարելիցին առթիւ) :*

ՕԴԱՅԻՆ ՃԱՄԲՈՎ ՇՐՋԱՊՏՈՅՏՆԵՐ

## ԽՈՐՀ. ՄԻՈՒԹԻՒՆ
ՆԱԵՒ
## ՀԱՅԱՍՏԱՆ
ԵՐԹԱԼՈՒ ԿԱՐԵԼԻՈՒԹԵԱՄԲ

# AIR FRANCE

Կը կազմակերպէ գարնան և ամրան շրջապտոյտներ դէպի Խ. Միութիւն

*Երթուղարձ ՔԱՐԱՎԵԼ օդանաւով : ՄՈՍԿՈՒԱ և ձեր ընտրած քաղաքներու տեսարժան վայրերու այցելութիւն եւ հաճելի պտոյտներ :*

9 ՕՐՈՒԱՆ ՀԱՄԱՐ,
ճամբորդութիւն եւ բնակութիւն
2320 Նոր Ֆրանքէն սկսեալ :

Տեղեկութիւններ առէք ձեր շրջանի ճամբորդական գործակալէն :

**Air France**
**Caravelle et Bœing**
Les deux meilleurs « jets » du monde

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ԿԱՊ. ԽԱՉԻ Ալֆորվիլի մասնաճիւղի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր ընկերուհիները, այս Ուրբաթ, ժամը 20.30ին, ընկերուհի Սիրանոյշ Անդրէասեանի բնակարանը*, 13 Րիւ Էմիլ Զոլա : *Կը խնդրուի բոլոր ընկերուհիներէն անպայման ներկայ ըլլալ :*

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընկ. ընդհ. ժողովի կը հրաւիրէ.— Ակնունի ենթակոմիտէն այս Երեքշաբթի, ժամը ճիշդ 21ին :*

## Կ՛ՈՒԶՈՒԻ

**coupeuse-patronnière**
Կարուհի մը,
Robe - Vignette*ի մասնագէտ :*
*ԼԱՒ ՎՃԱՐՈՒՄ*
*Կէս օրուան աշխատանք (ցերեկէ վերջ) :*
*Հեռաձայնել՝* CEN. 20-86

ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ
*ՈՐԲԵՐՈՒ ՕՆԴ. ՄԱՐՄՆԻ*
*Կազմակերպած*

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՀԱՆԴԷՍԸ

*Մարտ 2, ժամը 16էն 19*, Փավիյօն Սօֆին (Փորթ Սօֆին) :
*Հաճելի անակնկալներ :*

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղին
Կիրակի, Մարտ 5, ժամը 18էն 24

**Salons Lutetia**
**43, Bd. Raspail**
ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻ.—

### ՊԵՌՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆԻ

Ծանօթ նուագախումբը
ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՐ ԵՒ ԵՐԳ
*ՊԻՒՖԷ, ՃՈԽ ԵՒ ՄԱՏՉԵԼԻ ԳԻՆԵՐ*

# 30ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԵԱՆ ՇՐՋԱՆԻ
Կիրակի, Մարտ 5, կէս օրէ վերջ ժամը 2.30ին

**Salle de la Chimie**
28 bis, Rue St.-Dominique, Métro Invalides

*Մասնակցութեամբ Փարիզի շրջանի ֆրանսական եւ օտար սկաուտներուն, նախկին Հայ արիներուն, եւ Փարիզի շրջանի սկաուտներու եւ գայլիկներուն :*

Թատերական ներկայացումներ, հայկական պարեր եւ երգեր, սկաուտական ներկայացումներ, արտասանութիւն, եւ խաղեր, հայ Արիներու եւ գայլիկներու կողմէ :

*Պիւֆէ, ցուցադրութիւն* — Մուտք 5 եւ 3 Ն. Ֆ.

## MORY et Cie

ՆՈՒԷՐՆԵՐՈՒ ԵՒ ԾՐԱՐՆԵՐՈՒ ԱՌԱՔՈՒՄ ԴԷՊԻ ԽՈՐՀՐԴ. ՄԻՈՒԹԻՒՆ :

Գնեցէք զանոնք ձեր ուզած տեղը եւ առաքումը մեզի վստահեցէք : Նուազագոյն ծախքերով կըղրկենք Խորհրդ. Միութիւն :

*Դիմեցէք մեր նոր գիները գիտնալու համար.—*

**10, Rue St. Vincent de Paul, Paris 10e**
(PRÈS DE LA GARE DU NORD)
**Téléphone : TRU. 27-70**

ՎԱՐԴԱՆԱՆՑԻ 1500ԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ
Ի նպաստ Առնուվիլի եկեղեցիին
Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԿԱՌՎԱՐԵՆՑ ԽՈՒՄԲԸ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ

# ՎԱՐԴԱՆԱՆՑԸ

(5 արար – 4 պատկեր)

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ
ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ
եւ հովանաւորութեամբ
*ԱՌՆՈՒՎԻԼԻ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆ*
Կիրակի, Փետրուար 26, ժամը 15ին

**SALLE DE LA CHIMIE**

28 BIS, RUE ST. DOMINIQUE — MÉTRO : INVALIDES

Կը մասնակցի Սիփան – Կոմիտաս երգչախումբը ղեկավարութեամբ՝
*ԿԱՐԱՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ*

## ՁԵՐ ԲՈԼՈՐ ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ
→ ՄԷԿ ՀԱՍՑԷ ←

# OFFICE INTERNATIONAL DES VOYAGES

**36, Galerie Monpensier, PARIS**
**RIC. 54-30 et 72-80**

*Միակ* լիսանս *ունեցող գործակալութիւնը որ հայ տնօրէն մը ունի.—*
ՔՐԻՍԹԻԱՆ ՃԵՐՄԱԿԵԱՆ

ՕԴԱՆԱՒ, ԵՐԿԱԹՈՒՂԻ, ՆԱՒ : ՎԻԶԱ ԵՒ ՏՈՄՍԵՐՈՒ ԲՈԼՈՐ ՁԵՒԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՁՐԻ, ԿԸ ԲԱՒԷ ՀԵՌԱՁԱՅՆԵԼ

Բոլոր տոմսերու գիները պաշտօնական գիներն են, ոչ մէկ յաւելում :

*ՕԴԱՆԱՒՈՎ ԵՂԱԾ ԿԱՐԳ ՄԸ ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆՆԵՐ Կ՛ԱՊԱՀՈՎԵՆ ՆԱԵՒ ՁՐԻ ԲՆԱԿԱՐԱՆ ԵՒ ՃԱՇ ԶԱՆԱԶԱՆ ՔԱՂԱՔՆԵՐՈՒ ՄԷՋ*

ԴԷՊԻ ՀԱՅԱՍՏԱՆ

Օդանաւով ճամբորդութեանց համար մասնաւոր դիւրութիւններ
9 Օր ձրի բնակութիւն՝ Երեւան

*Մեկնումէն առաջ՝ կանխավճար՝* 258.81 Ն. Ֆ. : *Կարելի է ապառիկ վճարել* տասը առ հարիւր մեկնումէն առաջ, մնացեալը՝ 3էն 12 ամիսէն :

*Բոլոր մանրամասնութիւններու համար դիմել անձամբ կամ հեռաձայնել՝*

36, GALERIE MONPENSIER
(Jardin du Palais Royal)
Tél. : RIC. 54-30 et 72-80

*Մասնաւոր հաշիւ կը բացուի այն ընկերութիւններուն համար, որոնք կանոնաւորապէս կը ճամբորդեն :*

## ԾՐԱՐՆԵՐՈՒ ԱՌԱՔՈՒՄ ԴԷՊԻ ԽՈՐՀ. ՄԻՈՒԹԻՒՆ
**SICOMEX**

*Ֆրանսական կառավարութենէն եւ Մոսկուայի Ինթուրիսթէն ճանչցուած հաստատութիւն :*

**SICOMEX**

**20, Rue Royale, PARIS 8e**
**Téléphone : OPE. 67-77**
**Métro : CONCORDE et MADELEINE**

*ՄԻԱԿ ՏՈՒՆԸ*

*որ կարելիութիւնը կուտայ ձեզի, հետեւեալ երկու ձեւերով ծրարներ ղրկելու :*

1.— *Մեր ծախած ապրանքներով, որոնց ցանկը ճոխ է եւ որակը ընտիր :*

*ԻՏԱԼԻԱՑԷՆ ուղղակի ներածում,* քարտիկաշ *եւ զուտ բուրդէ վերնասուիներ՝ վերջին նորաձեւութիւն :*

*ԱՆԳԼԻԱՑԷՆ ուղղակի ներածում, զուտ բուրդէ կերպասներ և այլ ապրանքներ : Մուշտակի նմանակ վերարկուներ, անձրեւանոց, ներքնազգեստ, գուլպայ, փիրէնեան բուրդով շալ, կօշիկ, ժամացոյց, եւայլն... ԱՄԷՆԷՆ ՆՊԱՍՏԱՒՈՐ ԳԻՆԵՐՈՎ :*

*Մեր ապրանքներուն գիներուն մէջ նախատեսուած են մաքսային տուրքերը, արտօնութեան, ապահովագրութեան, ծրարումի եւ ստացագրի ծախքերը :*

*ՈՉ ՄԷԿ ԾԱԽՔ ծրարը ստացողին կողմէ :*
*Մեր ապրանքներուն ԱՌԱՔՈՒՄԻ ծախքն է 25 Ն. Ֆ. մինչեւ 20 քիլօ :*
2.— *Ձեր բերած ապրանքներն ալ կ՛ընդունինք, պայմանաւ որ նոր ըլլան :*
*ԱՐԱԳ ՑԱՆՁՆՈՒՄ՝ 2–4 շաբաթէն :*

ՈՒԶԵՑԷՔ ԵՒ ԱՆՄԻՋԱՊԷՍ ՊԻՏԻ ՍՏԱՆԱՔ ՄԵՐ ԲԱՑԱՏՐԱԿԱՆ ԵՒ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ՑՈՒՑԱԿՆԵՐԸ :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

| | Ն. Ֆ. |
|---|---|
| Նախկին գումար | 16.224,20 |
| Տիկ. Ագապի Մուրատեան | 30,00 |
| Հայր Աթանաս Վ. Քէսէճեան | 10,00 |
| Տէր եւ Տիկ. Անդրէաս Պաղտասարեան | 20,00 |
| Այրի Տիկ. Մաննիկ Մինասեան | 10,00 |
| Լիոնի Ցիշատակի երեկոյեան առթիւ | 220,00 |
| Տէր եւ Տիկին Տօքթ. Պօղոսեան | 10,00 |
| Լոնտոնի հայրենակիցներէն, Դաշնակցութեան օրուան հանդէսին | 495,00 |
| Յակոբ Նիկողոսեան | 50,00 |
| Մ. Սարգիսեան | 10,00 |
| Ալֆորվիլի հանգանակութեան արդիւնքը | 4378,00 |
| Սողոմոն Թիլպիեան | 15,00 |
| Գէորգ Կոփոյեան | 10,00 |
| Ազատ Պալեան | 10,00 |
| Ընդհ. գումար | 21.492,20 |

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Այս Չորեքշաբթի :
ԱԼՖՈՐՎԻԼ.— Այս Հինգշաբթի :
ԱՌՆՈՒՎԻԼ.— Այս Հինգշաբթի :
ԻՍԻ.— Երեքշաբթի (Փետր. 28ին) :
ՊԱՆԵՕ.— Երեքշաբթի (Մարտ 7ին) :
Շավիլ.— Հինգշաբթի (Մարտ 9) :

Սոյն ժողովներուն ներկայ կ'ըլլան կեդրոնական Վարչութեան ներկայացուցիչները : Կարեւոր օրակարգ եւ պարտաւորիչ ներկայութիւն :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Մ. Մանուկեանէ հարիւր Ն. Ֆ., իրենց որդւոյն Կ. Մանուկեանի ամուսնութեան առթիւ:

Տէր եւ Տիկին Ա. Օպօղեանէ 150 Ն. Ֆ. իրենց մօր մահուան առթիւ :

×

ՊԱՆԵԽՕ – ՔԱՇԱՆԻ Կապ. Խաչի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է տասը Ն. Ֆ. Տիկին Նուարդ Մաղազաճեանէ Այրի Տիկին Հռոմ Տէր Սիմոնեանի մահուան տարեդարձին առթիւ :

×

Լիոնի Եկեղեցաշէն յանձնախումբը շնորհակալութեամբ ստացաւ Փարիզէն Պ. Վահէ Զիլինկիրեանէ հանգուցեալ զոքանչ մօր հոգւոյն ի յիշատակ հազար Ն. Ֆ. :

Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ գումարները, ի նպաստ շինութեան.— Տէր եւ Տիկ. Թուֆայեան քսան Ն. Ֆ., Ոմն վաթսուն, Ոմն հարիւր Ն. Ֆ.: Տէր եւ Տիկին Մանուկ Մանուկեան իրենց զաւկին ամուսնութեան առթիւ հետեւեալ նուիրատուութիւնները ըրած են.— Եկեղեցաշէն յանձնախումբի հարիւր Ն. Ֆ., Աղքատախնամի մարմնի հարիւր, Կապոյտ Խաչի հարիւր, Կարմիր Խաչի հարիւր :

Կը խնդրուի սոյն գումարները եկեղեցւոյ դիւանէն ստանալ :

Լիոն Շարբէնէն Տէր եւ Տիկին Մուրատեան, հանգուցեալ Մաննիկ Մաքսաեան (Մարսիլիա մեռած), մահուան տարելիցին առթիւ 25 Ն. Ֆ. կը նուիրեն եւ 25 Ն. . ալ կը նուիրեն նոյնպէս Լիոնի եկեղեցւոյ շինութեան հանգուցեալ Նարգուհի Հաճի Պօղոսեանի ծնեալ Մուրատեան, (Երեւան մեռած) մահուան քառասունքին առթիւ :

### ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ
### ՈՐԲԵՐՈՒ ՕԺԱՆԴԱԿ ՕՆԴ. ՄԱՐՄՆԻ

ՕՐԲԵՐՈՒ ՕՆԴ. ՄԱՐՄՆԻ
Կազմակերպած

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՀԱՆԴԷՍԸ

Մարտ 2, ժամը 16էն 19, Փավիյօն Սօֆին (Փոքր Սօֆին) :
Հաճելի անակնկալներ :

## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ի
### ԱՊՍՏԱՄԲԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԻՆ
### 40ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Կը տօնուի Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան շքեղ սրահին մէջ, ընկերահամակրական խնջոյքով :

Շաբաթ, (25 Փետր.) կէսօրէ վերջ ժամը 17 – 23 :

ԿԸ ԽՕՍԻ՝

## ԸՆԿ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

Գեղարուեստական խնամուած բաժին : Առատ պիւֆէ դիւրամատչելի գիներով: Մուտքը ազատ է :

17, Rue Bleue, PARIS (9e)
Մէթրօ Քատէ :

×

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ
Փետրուար 25ին :

## ՆՈՒԷՐՆԵՐ

Տիկին Ռոզ Հանըմեան քսան Ն. Ֆ. կը նուիրէ Ֆ. Կ. Խաչի Անկէնի մասնաճիւղին, իր ամուսնոյն Արտաւազդ Հանըմեանի յիշատակին :

Տիկին Տիգրանուհի տասը Ն. Ֆ. կը նուիրէ 1915ին նահատակուած իր հարազատներուն յիշատակին, Ֆ. Կ. Խաչի Անկէնի մասնաճիւղին :

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ
ՎԱՐԺԱՐԱՆ

Աշակերտներուն կողմէ կազմակերպուած թատերական ներկայացում մը՝

**ԿԻՐԱԿԻ ՄԱՐՏ 5**

Կէսօրէ ետք ժամը 3.30ին

### ՎԱՐԴԱՆԱՆՑ
### ԴԻՒՑԱԶՆԱՄԱՐՏԻ
### ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

Սալ Մազըննյի մէջ, 88, Րիւ տ'Օպաներ
Այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին

Նախաձեռնութեամբ Մարսէյլի Հայ Արենոյշներու եւ գայլիկներու :

Հովանաւորութեամբ Պ. Տ. ԹԷՔԷՃԱՆԻ (Միութեան պատուոյ նախագահ) :

Կը խօսի Պ. Յ. ՀԱՅԱԳՈՐԾԵԱՆ

Գեղարուեստական խնամուած բաժին : Աւուր պատշաճի երգեր եւ արտասանութիւններ, հայկական պարեր, գեղջկական տարազներով :

Պիտի ներկայացուի Սմբատ Բիւրատի՝

ԱՒԱՐԱՅՐԻ ԱՐՇԻՒԸ
(Ողբերգութիւն 4 արար)

Նոյն հանդէսը տեղի պիտի ունենայ Նիսի մէջ, այս Կիրակի ժամը 16ին, Արքիւ-թիւֆ սրահին մէջ: Միեւնոյն յայտագրով: Պիտի խօսի Պ. ԱՐՄԷՆ ԹԱԹՈՅԵԱՆ :

## ԾԱԽՈՒ Է

Քարաշէն (մէօլիէր) փավիյօն մը Արքէօյի մէջ: Միայարկ, երեք սենեակ, տէպառա, վերնայարկ, մառան, ջուր, կազ, ելեկտրականութիւն, արեւոտ, փոքր պարտէզ մը: Մեթրոյին եւ հանրակառքի կայարանին մօտ: Դիւրամատչելի գին: Հեռաձայնել՝

POR. 27-55

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Պ. Պետրոս Պալթայեան կը փնտռէ իր եղբայրը՝ Գէորգ Պալթայեան (բնիկ Մարմաճիկցի), դեղագործ (եղած է Պոլիս եւ Եգիպտոս): Եգիպտոսէն Ֆրանսա անցած է, տեղեկացնել՝ Պետրոս Պալթայեանի,

189, BD. DE LA MADELEINE, NICE

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Ալֆորվիլի մասնաճիւղի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր ընկերուհիները, այս Ուրբաթ, ժամը 20.30ին, ընկերուհի Սիրանոյշ Անդրէասեանի բնակարանը, 13 Րիւ Էմիլ Զոլա : Կը խնդրուի բոլոր ընկերուհիներէն անպայման ներկայ ըլլալ :

## Կ'ՈՒԶՈՒԻ

**coupeuse-patronnière**
կարուհի մը,
Robe - Vignette ի մասնագէտ :
եւ լաւ մեքենիսիէն մը :

ԼԱՒ ՎՃԱՐՈՒՄ

Կէս օրուան աշխատանք (ցերեկէ վերջ): Հեռաձայնել՝ CEN. 20-86

## Հ. Յ. Դ.
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընկ. ընդհ. ժողովի կը հրաւիրէ.— Ակնուսի ենթակոմիտէն այս Երեքշաբթի, ժամը ճիշդ 21ին :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանի յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի ժամը 21ին, Քատէի վերնայարկը : Պիտի ներկայացուի՝ Պրիւսէլի մէջ Պ. Գրիգոր Մէլիքեանի կողմէ ձայնագրուած՝ Դանիէլ Վարուժանի յուշատախտակի զետեղման հանդիսութիւնը :

Պիտի լսուին՝ Հրանտ-Սամուէլի, Բիւզանդ Թօփալեանի, Փրոֆ. Ֆէյտիի, Հ. Սերովբէ Վրդ. Ագըլեանի եւ Շաւարշ Նարդունիի ճառերը :

ՎԱՐԴԱՆԱՆՑԻ 1500ԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ
Ի նպաստ Առնուվիլի եկեղեցիին
Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԿԱՌՎԱՐԵՆՑ ԽՈՒՄԲԸ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ

# ՎԱՐԴԱՆԱՆՑԸ

(5 արար – 4 պատկեր)

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ
ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ
եւ հովանաւորութեամբ
ԱՌՆՈՒՎԻԼԻ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆ
Կիրակի, Փետրուար 26, ժամը 15ին

**SALLE DE LA CHIMIE**

28 BIS, RUE ST. DOMINIQUE MÉTRO : INVALIDES

Կը մասնակցի Սիփան – Կոմիտաս երգչախումբը ղեկավարութեամբ՝
ԿԱՐԳԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ





## « ՅԱՌԱՋ »Ի ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

*Տիկին Սիրանոյշ Զաքրեան կը նուիրէ քսան Ն. Ֆ. «Յառաջ»ի բարգաւաճման համար իր ամուսնոյն Գէորգ Զաքրեանի յիշատակին :*

---

**ՊԱՏԿԵՐԱՍՓԻՌ**

*Յայտագիր*

« MUSIQUE POUR VOUS »

ԵՐԵՔՇԱԲԹԻ՝ ՓԵՏՐՈՒԱՐ 28
երեկոյեան ժամը 10

## ՇՈՒՇԱՆ ՄԻԼՏՈՆԵԱՆ

Քսանամեայ Քաջատաղանդը
Տաւիզի Միջազգային Ա. Պսակաւոր

*Փարիզի պատկերասփիւռ կայանի հրաւէրով կը նուագէ՝ Սքարլաթթի, Փրոքո-Ֆիէվ, Վիրճիլիօ Մորթարի :*

---

*Տէր եւ Տիկին Արշար Հայկազեան (Ամերիկա), Տէր եւ Տիկին Օննիկ Հայկազեան (Մարսէյլ), սրտի խոր կսկիծով կը ծանուցանեն իրենց մօր եւ կեսուր մօր՝*
**ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԵՐԱՆՈՒՀԻ ՀԱՅԿԱԶԵԱՆԻ**
(Ծնեալ Սէմէրճեան)

*Պարտիզակցի*, 101 *տարեկան, մահը :*

*Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի Երկուշաբթի՝ Փետրուար* 27, *ժամը* 14*ին, հաւաքուիլ իր բնակարանը՝* 297 Շըմէն Սէն Ժիւլիէն, Պօմոն :

*Ոչ ծաղիկ, ոչ ծաղկեպսակ :*

Մահազդ չստացողներէն կը խնդրուի, ներկայս իբրեւ այդ նկատել :

---

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

---

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ
ՎԱՐԺԱՐԱՆ

Աշակերտներուն կողմէ կազմակերպուած թատերական ներկայացում մը՝

**ԿԻՐԱԿԻ ՄԱՐՏ 5**
Կէսօրէ ետք ժամը 3.30ին
Կը ներկայացուին

**ԹԷՈԴՈՐ ՍԱԼՀՈՒՆԻ**
Ողբերգութիւն չորս արար

LE COLIS DE Mr. DOMINIQUE
Զաւեշտ մէկ արար

**ԵՐԿՈՒ ՀՆԱԿԱՐԿԱՏՆԵՐԸ**
Զաւեշտ մէկ արար

*Միջնարարին՝ արտասանութիւններ*
*Սիրով կը հրաւիրուին բոլոր ազգայինները :*

---

## ԾԱԽՈՒ Է

*Պանեէոյի մէջ, ծախու է ազատ փա*վիյօն *մը, չորս սենեակ, խոհանոց, մառք, տուշ, ջուր, կազ, ելեկտրականութիւն, 250 քառակուսի մեթր հողով, աշխատանոց մը եւ պտղատու ծառեր : Կայ նաեւ անջատ բնակուած տուն մը : Դիւրամատչելի պայմաններ, գրել եւ ժամադրուիլ հետեւեալ հասցէին .—*

*Պ. Կարապետեան*, 25, Րիւ Հայկ Թըպիրեան, Պանեէօ, (Սէն) :

---

## Կ'ՈՒԶՈՒԻ

*Միջին տարիքի կին մը, տնական գործերու համար, բնակութեամբ կամ առանց բնակութեան :*

*Հեռաձայնել ժամը*18.30*էն ետք* 966–12–78

---

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

*Լսարանի յաջորդ հաւաքոյթը այս Զորեքշաբթի ժամը* 21*ին, Քառէի վերնայարկը : Նիւթ՝ վիճաբանական՝ «Հայ կուսակցութիւններու ծագումը եւ իրենց դերը հայ ճակատագրին հանդէպ » :*

**ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ**
ՄԱՐՏ 12ԻՆ

---

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*Ֆ. Կ. ԽԱՉԻ միջմասնաճիւղային ժողովը այս Երկուշաբթի ժամը 3ին, Մշակոյթի Տան սրահին մէջ : Կը հրաւիրուին Փարիզի շրջանի մասնաճիւղերը : Պարտաւորիչ ներկայութիւն : Կարեւոր օրակարգ :*

---

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Նախաձեռնութեամբ Կապոյտ խաչի Փարիզի մասնաճիւղին
Կիրակի, Մարտ 5, ժամը 18էն 24

**Salons Lutetia**
**43, Bd. Raspail**

ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻ.—

**ՊԵՌՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆԻ**
Ծանօթ նուագախումբը

ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՐ ԵՒ ԵՐԳ
*ՊԻՒՖԷ, ՃՈԽ ԵՒ ՄԱՏՉԵԼԻ ԳԻՆԵՐ*

Ուսանողներու մուտքը զեղչով : Ձեր սեղանները հեռաձայնելով՝ CLI. 17-74

---

## ՁԵՐ ԲՈԼՈՐ ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ

→ ՄԷԿ ՀԱՍՑԷ ←

# *OFFICE INTERNATIONAL DES VOYAGES*

**36, Galerie Monpensier, PARIS**
**RIC. 54-30 et 72-80**

*Միակ* լիսանս *ունեցող գործակալութիւնը որ հայ տնօրէն մը ունի .—*
ՔՐԻՍԹԻԱՆ ՃԵՐՄԱԿԵԱՆ

ՕԴԱՆԱՒ, ԵՐԿԱԹՈՒՂԻ, ՆԱՒ : ՎԻԶԱ ԵՒ ՏՈՄՍԵՐՈՒ ԲՈԼՈՐ ՁԵՒԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՁՐԻ, ԿԸ ԲԱՒԷ ՀԵՌԱՁԱՅՆԵԼ

Բոլոր տոմսերու գիները պաշտօնական գիներն են, ոչ մէկ յաւելում :

*ՕԴԱՆԱՒՈՎ ԵՂԱԾ ԿԱՐԳ ՄԸ ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆՆԵՐ Կ'ԱՊԱՀՈՎԵՆ ՆԱԵՒ ՁՐԻ ԲՆԱԿԱՐԱՆ ԵՒ ՃԱՇ ԶԱՆԱԶԱՆ ՔԱՂԱՔՆԵՐՈՒ ՄԷՋ*

ԴԷՊԻ ՀԱՅԱՍՏԱՆ

Օդանաւով ճամբորդութեանց համար մասնաւոր դիւրութիւններ
9 Օր ձրի բնակութիւն՝ Երեւան

*Մեկնումէն առաջ՝ կանխավճար՝* 258.81 *Ն. Ֆ. : Կարելի է ապառիկ վճարել՝* տասը առ հարիւր մեկնումէն առաջ, մնացեալը՝ 3էն 12 ամիսէն :

*Բոլոր մանրամասնութիւններու համար դիմել անձամբ կամ հեռաձայնել՝*

36, GALERIE MONPENSIER
(Jardin du Palais Royal)
Tél. : RIC. 54-30 et 72-80

*Մասնաւոր հաշիւ կը բացուի այն ընկերութիւններուն համար, որոնք կանոնաւորապէս կը ճամբորդեն :*

---

# 30$^{րդ}$ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ

Կիրակի, Մարտ 5, կէս օրէ վերջ ժամը 2.30ին

**Salle de la Chimie**

28 bis, Rue St.-Dominique, Métro Invalides

*Մասնակցութեամբ Փարիզի շրջանի ֆրանսական եւ օտար սկաուտներուն, նախկին հայ արիներուն, եւ Փարիզի շրջանի սկաուտներու եւ գայլիկներուն :*
Թատերական ներկայացումներ, հայկական պարեր եւ երգեր, սկաուտական ներկայացումներ, արտասանութիւն, եւ խաղեր, հայ Արիներու եւ գայլիկներուն կողմէ :

*Պիւֆէ, ցուցադրութիւն* — Մուտք 5 եւ 3 Ն. Ֆ.

---

## MORY et Cie

ՆՈՒԷՐՆԵՐՈՒ ԵՒ ԾՐԱՐՆԵՐՈՒ ԱՌԱՔՈՒՄ ԴԷՊԻ ԽՈՐՀՐԴ. ՄԻՈՒԹԻՒՆ :

Գնեցէք զանոնք ձեր ուզած տեղը եւ առաքումը մեզի վստահեցէք : Նուազագոյն ծախքերով կը ղրկենք խորհրդ. Միութիւն :

*Դիմեցէք մեր նոր գիները գիտնալու համար .—*

**10, Rue St. Vincent de Paul, Paris 10e**
(PRÈS DE LA GARE DU NORD)
**Téléphone : TRU. 27-70**

---

# ԵՒՐՈՊԱՅԻ

ՄԵԾԱԳՈՅՆ ԱՐՏԱԴՐԻՉԸ

ՀԷԼՎԱ — ԹԱՀԻՆ
ԼՈԳՈՒՄ — ՇԱՐՈՑ
Սուսամ — (ՌՈՃԻԿ)
ՀԷԼՎԱ — ՎԱՐԴԷ-ԱՆՈՅՇ

ՆՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ...

**CHOC-ALVA • CHOCO-LOC**

Ste le BOSPHORE
SIÈGE SOCIAL
2, Rue Louis Astouin/Marseille (2ème)

---

## ԾՐԱՐՆԵՐՈՒ ԱՌԱՔՈՒՄ ԴԷՊԻ ԽՈՐՀ. ՄԻՈՒԹԻՒՆ
## SICOMEX

*Ֆրանսական Կառավարութենէն եւ Մոսկուայի Ինթուրիսթէն ճանչցուած հաստատութիւն :*

**SICOMEX**

20, Rue Royale, PARIS 8e
Téléphone : OPE. 67-77
Métro : CONCORDE et MADELEINE

*ՄԻԱԿ ՏՈՒՆԸ*

*որ կարելիութիւնը կուտայ ձեզի, հետեւեալ երկու ձեւերով ծրարներ ղրկելու :*

1.— *Մեր ծախած ապրանքներով, որոնց ցանկը ճոխ է եւ որակը ընտիր :*

*ԻՏԱԼԻԱՅԷՆ ուղղակի ներածում, քարտիկան եւ զուտ բուրդէ վերնաշուէներ՝ վերջին նորաձեւութիւն :*

*ԱՆԳԼԻԱՅԷՆ ուղղակի ներածում, զուտ բուրդէ կերպասներ և այլ ապրանքներ : Մուշտակի նմանակ վերարկուներ, անձրեւանոց, ներքնազգեստ, գուլպայ, փիրէնեան բուրդով շալ, կօշիկ, ժամացոյց, եւայլն... ԱՄԷՆԷՆ ՆՊԱՍՏԱՒՈՐ ԳԻՆԵՐՈՎ :*

*Մեր ապրանքներուն գիներուն մէջ նախատեսուած են մաքսային տուրքերը՝ արտօնութեան, ապահովագրութեան, ծրարումի եւ ստացագրի ծախքերը :*

*ՈՉ ՄԷԿ ՏՈՒՐՔ ծրարը ստացողին կողմէ :*

*Մեր ապրանքներուն ԱՌԱՔՈՒՄԻ ծախքն է* 25 *Ն. Ֆ. մինչեւ* 20 *քիլօ :*

2.— *Ձեր բերած ապրանքներն ալ կ'ընդունինք, պայմանաւ որ նոր ըլլան :*

*ԱՐԱԳ ՅԱՆՁՆՈՒՄ՝* 2–4 *շաբաթէն :*

ՈՒԶԵՑԷՔ ԵՒ ԱՆՄԻՋԱՊԷՍ ՊԻՏԻ ՍՏԱՆԱՔ ՄԵՐ ԲԱՑԱՏՐԱԿԱՆ ԵՒ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ՑՈՒՑԱԿՆԵՐԸ :

